ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



СОДЕРЖАНИЕ




Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։

Адрес редакции—Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.





Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք:

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 20
ՀՈԿՏԵՄԲԵՐ
1963

ՀԿԿ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ


ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ԵՎ ԶԵԿՈՒՑՈՒՄՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 46-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

*Սովետական ժողովուրդը, սոցիալիստական մեծ համագործակցության բոլոր ժողովուրդները, ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը մեծ հանդիսավորությամբ են տոնում պատարար հոկտեմբերի 46-րդ տարեդարձը:*

*Քառասունվեց տարի առաջ, 1917 թվականի հոկտեմբերի 25-ին (նոյեմբերի 7-ին) Ռուսաստանի բանվոր դասակարգը դաշինք կնքած աշխատավոր գյուղացիության հետ, մեծ Լենինի ստեղծած բոլշևիկների պարտիայի իմաստուն ղեկավարությամբ պատմության մեջ առաջին անգամ իրագործեց հաղթական սոցիալիստական ռևոլյուցիա, տապալեց կապիտալիստական կարգերը և հաստատեց պրոլետարիատի դիկտատուրա:*

*Մարդկային հասարակության պատմությանը հայտնի են շատ իրադարձություններ, որոնք իրավամբ կոչվում են նշանավոր, կարևոր, անգամ դարակազմիկ: Սակայն համաշխարհային պատմության մեջ չի եղել մի իրադարձություն, որը այնպես խոր կերպով շոշափեր ժողովուրդների կյանքի հիմքերը, այնպիսի հզոր վերափոխիչ ազդեցություն ունենար մարդկության զարգացման ամբողջ պրոցեսի վրա, մարդկության ճակատագրի վրա, ինչպիսին ունեցավ Հոկտեմբերյան սոցիալիստական ռևոլյուցիան: Հոկտեմբերյան ռևոլյուցիան խարխլեց համաշխարհային կապիտալիզմի ամբողջ շենքը:*

Նա նոր դարագլուխ բացեց մարդկության պատմության մեջ՝ կապիտալիզմի կործանման և կոմունիզմի հաստատման դարագլուխը։ Հազարամյակների պատմության մեջ առաջին անգամ աշխատավոր մարդը դարձավ իր երկրի և իր բախտի տերը։ Շնորհիվ սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի, մեր երկրում առաջինը կառուցվեց սոցիալիզմ, վերացվեցին շահագործող դասակարգերը, ոչնչացվեց մարդու կողմից մարդու շահագործումը, ազգային ճնշումը և ազգային անհավասարությունը։ Մարդկանց և ժողովուրդների միջև իսկական բարեկամության և եղբայրության սկիզբը դրվեց։ Կանցնեն դարեր և հազարամյակներ, բայց երբեք չի խամրի մեծ Հոկտեմբերի փառքը, որը ամբողջ մարդկության համար ճանապարհ հարթեց դեպի պայծառ ապագան, դեպի կոմունիզմը։

Մեծ Հոկտեմբերի հաղթանակը և սոցիալիզմի կառուցումը մեր երկրում հանդիսացան մարքսիզմ-լենինիզմի անպարտելի ուսմունքի պատմական տրիումֆը և խորտակիչ հարված հասցրին լենինիզմի բոլոր հակառակորդներին։ Մեծ Հոկտեմբերի ազատարար համազարկերը արձագանք գտան աշխարհի բոլոր մասերում, հասան գաղութային ու կախյալ երկրների ժողովուրդներին։ Եվ եթե սոցիալիզմը Հոկտեմբերի հաղթանակից հետո մի օազիս էր իմպերիալիզմի ծովում, ապա ներկայումս այն դուրս է եկել մեկ երկրի շրջանակներից և դարձել է սոցիալիստական երկրների ժողովուրդների մի համաշխարհային հզոր համագործակցություն, որն իր մեջ ընդգրկում է երկրագնդի բնակչության ավելի քան մեկ երրորդը։ Աշխարհում չկան այնպիսի ուժեր, որ կարողանան վերականգնել կապիտալիզմը մեր երկրում, տապալել սոցիալիստական լագերը։ Սոցիալիզմը դարձել է մեր ժամանակներում հասարակական զարգացման որոշիչ գործոնը։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան հզոր թափ հաղորդեց ժողովուրդների ազատագրական պայքարին, իմպերիալիզմի գաղութային անարգ սիստեմի փլուզման սկիզբը դրեց։ Այսօր արդեն մարդկությունն ականատես է գաղութային սիստեմի վերջնական կրախին։ Միայն վերջին տարիներին ավելի քան 50 նոր անկախ պետություններ են երևան եկել աշխարհի քաղաքական քարտեզի վրա։

Սովետական Միության, սոցիալիստական բոլոր երկրների մեծ հաջողությունները տնտեսության, գիտու-








թյան ու կուլտուրայի զարգացման բնագավառներում հուժկու ազդեցություն են թողնում աշխարհի բոլոր ժողովուրդների վրա, նրանց ցույց են տալիս սոցիալական ազատության ու առաջադիմության ճիշտ ուղին։

Աշխարհի ժողովուրդները սիրով և լի հույսով իրենց հայացքն ուղղում են դեպի Սովետական մեծ Միությունը, դեպի կոմունիզմ կառուցող մեր հայրենիքը, նրա մեջ տեսնելով աշխատանքի մարդու երջանկության մասին իրենց երազանքների մարմնացումը։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 46-րդ փառապանծ տարեդարձը նշվում է պատմական խոշոր իրադարձությունների պայմաններում։ Սովետական ժողովուրդը մեծ խանդավառությամբ կենսագործում է յոթնամյակի հինգերորդ տարվա առաջադրանքները, իրականացնում է կոմունիզմի կառուցման հոյակապ խնդիրները։

Ընդամենը 46 տարի է անցել այն օրից, երբ «Ավրորա»-ի ազատարար համազարկերն ազդարարեցին պատմության մեջ նոր դարագլխի սկիզբը։ Սակայն ինչպիսի վիթխարի փոփոխություններ են կատարվել մեր երկրում պատմական այդ կարճ ժամանակաշրջանում։ Սովետական մարդիկ այս օրերին, հաստատված հիանալի տրադիցիային համապատասխան, հայացք են գցում անցած ճանապարհին, հանրագումարի են բերում կատարված աշխատանքը, նշում են հետագա անելիքները։

Արդյունքները հիրավի հոյակապ են։ Սոցիալիզմը դուրս բերեց մեր երկիրը տնտեսական, կուլտուրական և գիտա-տեխնիկական առաջադիմության մեծ ճանապարհ։ Մտովին ետ գնանք դեպի 1913 թվականը։ Ինչպիսի՞ պատկեր էր ներկայացնում այն ժամանակ ցարական Ռուսաստանը։ Համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մեջ Ռուսաստանի բաժինը կազմում էր 4 տոկոսից մի փոքր ավելի, իսկ ԱՄՆ-ի բաժինը՝ 34 տոկոս։ Շատ առաջ էին նաև Գերմանիան, Անգլիան, Ֆրանսիան։ Ներկայումս պատկերը միանգամայն փոխվել է հօգուտ սոցիալիզմի։ Այժմ Սովետական Միությունն արտադրում է համաշխարհային արդյունաբերական արտադրանքի 20 տոկոսը, այսինքն մոտավորապես այնքան, որքան Անգլիան, Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկան և Ֆրանսիան միասին վերցրած։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նախօրյակին մեր երկիրը կապիտալիստական գլխավոր երկրներից ետ էր

մնում 50—100 տարով։ Ցարական Ռուսաստանը համարվում էր սայլի, արորի ու ճախարակի երկիր։ Նա տասն անգամ ավելի քիչ մեքենաներ ուներ, քան ԱՄՆ-ը, 5 անգամ քիչ՝ քան Գերմանիան։

Սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ, տնտեսապես երբեմնի հետամնաց մեր երկիրը այսօր դարձել է աշխարհի ամենահզոր տերություններից մեկը, որն իր արդյունաբերական համախառն արտադրանքով աշխարհում գրավում է երկրորդ տեղը։ ՍՍՌՄ-ը առաջավոր տեխնիկայի, գերհզոր հաստոցների, ճշգրիտ սարքերի, ավտոմատ գծերի, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների և տիեզերանավերի երկիր է։ Սովետական Միությունն աշխարհում ամենահզոր էլեկտրակայանների երկիրն է։ Այժմ մեր՝ երկրում 160 անգամից ավելի էլեկտրաէներգիա է արտադրվում, քան արտադրվել է 1919 թվականին։ Կոմունիստական պարտիան հետևողականորեն կենսագործում է մեծ Լենինի պատգամը երկրի էլեկտրիֆիկացման մասին, այն դիտելով որպես կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման վճռական գործոնը, աշխատանքի արտադրողականության բարձրացման հիմքը։

Արդյունաբերական արտադրանքի արտադրությամբ Սովետական Միությունը վստահորեն հասնում է ամենազարգացած կապիտալիստական երկրին՝ ԱՄՆ-ին։ Եթե 1921 թվականին ՍՍՌՄ-ի արդյունաբերական արտադրանքը կազմում էր ԱՄՆ-ի արտադրանքի ծավալի միայն 2 տոկոսը, ապա ներկայումս այն կազմում է նրա ավելի քան 60 տոկոսը։ Արդյունաբերական արտադրանքի մի շարք կարևոր տեսակների գծով ՍՍՌՄ-ը ներկայումս գերազանցում է ԱՄՆ-ին։

Արդյունաբերության բուռն զարգացման շնորհիվ ՍՍՌՄ-ը դարձել է ինդուստրիալ հզոր տերություն, հասել է տնտեսական լիակատար անկախության կապիտալիստական երկրներից։ ՍՍՌՄ-ի ինդուստրացումը մեր բանվոր դասակարգի, ամբողջ սովետական ժողովրդի համաշխարհային պատմական մեծագույն սխրագործությունն է, սոցիալիզմի վիթխարի նվաճումը։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման մեջ առանձնահատուկ տեղ է գրավում վերջին տասնամյակը։ 1953 թվականի սեպտեմբերին տեղի ունեցած ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը երկրի զարգացման գործում նոր էտապի սկիզբը դրեց, առաջին քայլը կատարեց մեր հասարակության հանրակական-քաղաքական, տնտե-



սական և գաղափարական կյանքի բոլոր բնագավառներում ղեկավարման լենինյան սկզբունքների վերականգնման ուղղությամբ։ Պլենումը վճռական շրջադարձ կատարեց դեպի էկոնոմիկայի կոնկրետ ղեկավարումը, դեպի արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի պրակտիկ հասունացած խնդիրների լուծումը։ Դրանք այն խնդիրներն էին, որոնք հասունացել էին, բայց երկար տարիներ չէին լուծվում, կաշկանդում էին երկրի տնտեսական հզորության և ժողովրդի բարեկեցության աճը։ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը, և հատկապես ՍՄԿՊ XX, XXI և XXII համագումարները վերականգնելով պարտիական կյանքի լենինյան նորմաները, պարտիայի մեջ ստեղծեցին իսկական ստեղծագործական, իրոք կոլեկտիվ աշխատանքի մթնոլորտ։ Վերջ տրվեց գյուղատնտեսության նկատմամբ սխալ վերաբերմունքին, ցույց տրվեց գյուղատնտեսության հետագա զարգացման կարևոր նշանակությունը մեր երկրում կոմունիզմի կառուցման գործում։ Պարտիան խիզախորեն բացահայտեց գյուղատնտեսության ետ մնալու պատճառները և նշեց դրանց հաղթահարման ուղիները։ Այդ ուղղությամբ ձեռնարկված միջոցառումների կիրառումը տվեցին իրենց շոշափելի արդյունքները։ Եթե 1949—1953 թ. թ. գյուղատնտեսության համախառն արտադրանքը տարեկան միջին հաշվով կազմում էր 30,5 միլիարդ ռուբլի, ապա 1954—1958 թվականներին այն գերազանցում էր 40 միլիարդից, իսկ 1959—1962 թվականներին՝ տարեկան կազմում էր 50 միլիարդ ռուբլի։ Առաջ երբեք գյուղատնտեսությունը այդպիսի տեմպերով չէր զարգացել։

Գյուղատնտեսության վերելքի ուղղությամբ պարտիայի ձեռնարկած միջոցառումների իրականացումը ունի հիրավի ռևոլյուցիոն նշանակություն և լայն հորիզոններ է բացում ժողովրդական տնտեսության մյուս բնագավառներում էլ արմատական փոփոխություններ կատարելու համար։ Սակայն գյուղատնտեսության զարգացման ներկա մակարդակը նույնպես չի կարող բավարարել սովետական ժողովրդի աճած պահանջներին։ Այդ պատճառով էլ պարտիան շարունակում է նոր միջոցառումներ իրագործել՝ գյուղատնտեսության զարգացման ավելի արագ տեմպեր ապահովելու, ՍՄԿՊ ծրագրով նախատեսված խնդիրները հաջողությամբ կենսագործե-

լու, գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու համար։

Անցած տասնամյակում վիթխարի առաջընթաց քայլ կատարեց մեր երկրի արդյունաբերությունը։ Բավական է ասել, որ վերջին տաս տարում մեր երկրում ձուլվեց մոտավորապես 400 միլիոն տոննա չուգուն և ավելի քան 550 միլիոն տոննա պողպատ, այսինքն զգալիորեն շատ, քան նախորդ հարյուրամյակում։ Արդյունահանվեց ավելի քան 1 միլիարդ 100 միլիոն տոննա նավթ մեծապես շատ, քան անցյալ դարի կեսերից մինչև 1952 թվականն ընկած ամբողջ ժամանակամիջոցում։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման բարձր տեմպերի մասին են վկայում ընթացիկ տարվա առաջին կիսամյակի արդյունքները։ Սովետական Միության աշխատավորները, կենսագործելով պարտիայի XXII համագումարի և ՍՄԿՊ Կենտկոմի պլենումների պատմական որոշումները, ընթացիկ տարվա առաջին կիսամյակը նշանավորեցին տնտեսության զարգացման, ժողովրդի բարեկեցության և կյանքի կուլտուրական մակարդակի վերելքի գործում ձեռք բերած նոր հաջողություններով։

Արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման կիսամյա պլանը կատարվեց 103 տոկոսով։ Անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ արդյունաբերության արտադրության ծավալը աճել է 8,5 տոկոսով։ Անցած չորս և կես տարում յոթնամյա պլանի այդ ժամանակամիջոցի առաջադրանքից դուրս արտադրված է 33 միլիարդ ռուբլու արդյունաբերական արտադրանք։

Առանձնապես մեծ չափով աճել է արդյունաբերության առաջատար մի շարք ճյուղերի արտադրանքը։ Այսպես, անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ, քիմիայի արտադրանքն աճել է 17 տոկոսով, այդ թվում՝ սինթետիկ ձյութերի և պլաստմասսաների արտադրանքը՝ 22 տոկոսով, սև և գունավոր մետալուրգիայինը՝ 9, վառելիքինը և էներգետիկայինը՝ 9, մեքենաշինությանը և մետաղամշակմանը՝ 14 տոկոսով։

Առաջին կիսամյակում մեր երկրում արտադրվեց 151 հազար տոննա արհեստական սինթետիկ թել, 28,7 միլիոն տոննա չուգուն, 39,6 միլիոն տոննա պողպատ, 31 միլիոն տոննա գլանվածք, 613 միլիոն մետր պողպատե խողովակներ, 67 միլիոն տոննա երկաթե հանքաքար, 99 միլիոն տոննա նավթ, 44,5 միլիարդ խորանարդ մետր գազ, 262 միլիոն տոննա ածուխ, 204 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 293 հազար հատ ավտոմոբիլ, 159 հազար տրակտոր, 30,3 միլիոն տոննա ցեմենտ, 2 միլիարդ 512 միլիոն քառակուսի մետր գործվածքեղեն, 231 միլիոն զույգ կաշվե կոշիկ։



Աշխատավորներն ստացան 1,7 միլիոն տոննա միս (առանց կոլտնտեսությունների և բնակչության տնային արտադրության) կամ 19 տոկոսով ավելի, քան 1962 թվականի նույն ժամանակամիջոցում, 679.000 տոննա երշիկեղեն, 4,8 միլիոն տոննա անարատ կաթնամթերքներ։

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացումը իրագործվում է արտադրության մեքենայացման և ավտոմատացման, առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման, նոր, ավելի կատարյալ արտադրողական մեքենաների արտադրության յուրացման և արմատավորման հիման վրա։ Առաջին կիսամյակին արդյունաբերական ձեռնարկությունները յուրացրեցին և պատրաստեցին շուրջ 300 նոր կարևորագույն տեսակի մեքենաներ, սարքավորում, սարքեր և տարբեր կիրառման նոր տեսակի նյութեր։ Ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվեց շուրջ մեկ միլիոն 400 հազար գյուտ և ռացիոնալիզատորական առաջարկ։ Արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ աճեց գրեթե 6 տոկոսով։ Գերակատարվեց արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցման կիսամյա պլանը։

Որոշակի հաջողություններ են ձեռք բերվել գյուղատնտեսության բնագավառում։

Այս տարի երկրի շրջանների մեծ մասում գարնան դաշտային աշխատանքները կատարվեցին անբարենպաստ եղանակների պայմաններում, որի հետևանքով գարնանացան կուլտուրաների ցանքը սովորականից ավելի ուշ սկսվեց։ Գյուղատնտեսության աշխատողները հաջողությամբ հաղթահարեցին այդ դժվարությունները, կազմակերպված կերպով ու սեղմ ժամկետներում կատարեցին դաշտային աշխատանքները և գերակատարեցին գարնանացանի պլանը։ Ամբողջ ցանքատարածությունները նախորդ տարվա համեմատությամբ աճեցին 2,1 միլիոն հեկտարով, ընդ որում հացահատիկային կուլտուրաներինը (առանց եգիպտացորենի) աճեցին 7,9 միլիոն հեկտարով։ Գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների ցանքատարածությունը կազմել է 218,1 միլիոն

հեկտար, որից հացահատիկային կուլտուրաներ՝ (առանց եգիպտացորենի) 129,6 միլիոն հեկտար, իսկ ցորենը՝ 67 միլիոն հեկտար։

Կոլտնտեսությունների և սովխոզների խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը տարվա ընթացքում ավելացել է 3 միլիոն գլխով, այդ թվում կովերինը՝ 1,6 միլիոն գլխով, ոչխարների և այծերի գլխաքանակը ավելացել է 2,7 միլիոն գլխով։ Անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ կոլտնտեսություններում և սովխոզներում մսի արտադրությունն ավելացել է 3 տոկոսով։

Անշեղորեն զարգանում է սոցիալիստական կուլտուրան, բարձրանում է սովետական ժողովրդի նյութական բարեկեցությունը և կուլտուրական մակարդակը։ Բնակչությունը այս տարվա առաջին կեսին սպառման հանրային ֆոնդերից ստացավ 15 միլիարդ ռուբլի կամ գրեթե մեկ միլիարդով ավելի, քան 1962 թվականի առաջին կիսամյակում։ Պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ, համադրելի գներով, ավելացավ 4 տոկոսով։

Երկրում ուսուցման տարբեր ձևերում ներկայումս ընդգրկված են ավելի քան 61 միլիոն մարդ, այդ թվում 49,5 միլիոն մարդ սովորում է հանրակրթական դպրոցներում, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում, պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության ուսումնարաններում։ Միայն բուհերում սովորում են 3 միլիոն ուսանող։

Երկրում կա 4.476 գիտական հիմնարկ։ Գիտական աշխատանքով է զբաղված 525 հազար մարդ։

Հաջողությամբ է ընթանում բնակարանային շինարարությունը։ Պետական միջոցների հաշվին առաջին կիսամյակում շահագործման հանձնվեցին ավելի քան 19 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ կամ 485 հազար նոր բարեկեցիկ բնակարան։ Գործարկվեցին մեծ թվով նոր դպրոցներ, մանկական նախադպրոցական հիմնարկներ և կուլտուրայի տներ։

Կոմունիզմի կառուցման ներկա էտապում խիստ կերպով աճում է պարտիայի գաղափարական աշխատանքի, մասսաների կոմունիստական դաստիարակության նշանակությունը։ Այդ պատճառով էլ պարտիան առանձնահատուկ տեղ է տալիս գաղափարական աշխատան-



քին։ Նա ձգտում է գաղափարական աշխատանքի բոլոր միջոցների ավելի ու ավելի արդյունավետ օգտագործման։ Պարտիայի գաղափարական աշխատանքի հերթական խնդիրները քննարկվեցին ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումում։

Սովետական Միությունը, սոցիալիստական երկրները նորանոր հաջողություններ են ձեռք բերում կապիտալիզմի հետ տնտեսական մրցության մեջ։ Պատմական կարճ ժամկետում սոցիալիզմն ապացուցեց իր անվիճելի առավելությունները կապիտալիզմի նկատմամբ հասարակական կյանքի վճռական ոլորտում՝ նյութական արտադրության ոլորտում։ Համաշխարհային ասպարեզում ստեղծվել է ուժերի այնպիսի տեղաբաշխում, երբ իմպերիալիզմն արդեն չի կարող սոցիալիզմը խորտակել պատերազմի միջոցով։ Իմպերիալիստական երկրների կառավարող շրջանները, չհրաժարվելով սոցիալիզմի դեմ ուղղված պայքարի ուրիշ ձևերից, գլխավորապես հույսը դնում են սոցիալիստական պետությունների նկատմամբ գաղափարական դիվերսիաների, կատաղի հակակոմունիզմի վրա, նրանք փորձում են մեր հասարակության մեջ անցկացնել արևմտի «անպարտիականության», «ստեղծագործության բացարձակ ազատության», գաղափարազրկության և ապոլիտիկության կեղծ կոնցեպցիաները, գաղափարապես կազմալուծել անկայուն մարդկանց։

Պարտիայի Կենտկոմի հունիսյան պլենումը պահանջեց արմատապես բարելավել մեր գաղափարական աշխատանքը, ուժեղացնել հարձակումը կոմունիստական շինարարության այդ կարևորագույն ճակատում։ Պլենումը նշեց, որ ժամանակակից պայմաններում պարտիայի գաղափարական դաստիարակչական աշխատանքի գլխավոր խնդիրն է՝ գաղափարապես ապահովել ՍՄԿՊ ծրագրի կենսագործումը, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, կոմունիստական հասարակական հարաբերությունների ձևավորումը, նոր մարդու դաստիարակությունը, բարձրացնել քաղաքական զգոնությունը, ծավալուն հարձակում գործել իմպերիալիստական գաղափարախոսության վրա, մարդկանց գիտակցության մեջ անցյալի մնացուկների վրա։ Կենտկոմի պլենումը պահանջեց բոլոր պարտիական կազմակերպություններից, գաղափարական ճակատի բոլոր աշխատողներից՝ հասնել գաղափարական աշխատանքի արմատական բարելավման, է՛լ ավելի բարձրացնել ժողովրդի

ստեղծագործական ակտիվությունը հանուն մեր երկրում կոմունիզմի կառուցման խնդիրների իրագործման, մարքս-լենինյան մեծ ուսմունքի հետագա հաղթանակների։ Բուռն թափով են զարգանում մեր երկրում գիտությունն ու տեխնիկան։ Սովետական գիտության և տեխնիկայի նոր փայլուն հաղթանակը հանդիսացավ անվախ տիեզերագնացներ Վալերի Բիկովսկու և Վալենտինա Տերեշկովայի խմբային երկարատև տիեզերական թռիչքը և նրանց հաջող վերադարձը երկիր։ Ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը ցնծությամբ ընդունեց սոցիալիզմի առաջին երկրի ժողովրդի գիտա-տեխնիկական մտքի այդ մեծ նվաճումը։

Մեծ Հոկտեմբերի պանծալի 46-ամյակը աշխատանքային նոր հաջողություններով են նշանավորում նաև մեր ռեսպուբլիկայի աշխատավորները։ Ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները համախառն արտադրանքի թողարկման ընթացիկ տարվա առաջին կիսամյակի պլանը կատարեցին 102,8 տոկոսով։ Անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ արդյունաբերական արտադրանքի թողարկումը ռեսպուբլիկայում աճեց 10,3 տոկոսով, ընդ որում քիմիական արդյունաբերության արտադրանքն աճեց 26 տոկոսով, մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքը՝ 13, շինանյութերի արդյունաբերությանը՝ 15, սննդարդյունաբերությանը՝ 12 տոկոսով։

1962 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ այս տարվա առաջին կիսամյակում ավելի արտադրվեց 1.448 շարժական էլեկտրակայան, մինչև 100 կիլովատ կարողությամբ փոփոխական հոսանքի 761 գեներատոր, 1.146 էլեկտրալուսավորման սարքավորում, 103 հազար տոննա ցեմենտ և այլն։

Աշխատանքի արտադրողականությունը, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, աճեց 3,9 տոկոսով։

Ռեսպուբլիկայի շրջանների մեծ մասում գարնան դաշտային աշխատանքները ընթացան աննպաստ եղանակի պայմաններում, որի պատճառով գարնանացան կուլտուրաների ցանքն սկսվեց սովորական ժամկետից ուշ։ Գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների ցանքատարածությունները կազմեցին 412,7 հազար հեկտար։ Որոշ չափով ընդլայնվեցին ցորենի, հատիկալոբազգի կուլտուրաների և ծխախոտի ցանքատարածությունները։

1963 թվականի առաջին կիսամյակում, անցյալ



տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, կոլտնտեսություններում ու սովխոզներում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացավ 24 հազարով, կամ 5 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 4,9 հազարով կամ 4 տոկոսով։ Ոչխարների և այծերի գլխաքանակն ավելացավ 115,4 հազարով, կամ 7 տոկոսով, թռչուններինը՝ 191,6 հազարով կամ 9 տոկոսով։ Մեկ կովի միջին կաթնատվությունը ավելացավ 6 տոկոսով։ Սպանդանոցային քաշով մսի արտադրությունն ավելացավ 6 տոկոսով, կաթի և ձվի արտադրությունը՝ 8 տոկոսով, բրդինը՝ 9 տոկոսով։ Սակայն բնակլիմայական վատ պայմանները զգալի չափով ազդեցին գյուղատնտեսական կուլտուրաների մշակման և առաջադրված պլանների կատարման վրա։

Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում, անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, ռեսպուբլիկայում զգալիորեն աճեցին կապիտալ ներդրումները։ Կիսամյակի ընթացքում գործարկվեցին Ագարակի պղնձամոլիբդենի կոմբինատը (առաջին հերթը), Երևանի ջերմաէլեկտրակայանի առաջին հերթը, իսկ վերջերս նաև երկրորդ հերթը, ավելացան մի շարք ձեռնարկությունների արտադրական կարողությունները։

Շինարարության ասպարեզում աշխատանքի արտադրողականությունն անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ աճեց 3 տոկոսով։

Նոր նվաճումներ են ձեռք բերվել գիտության և կուլտուրայի զարգացման բնագավառում։ Սովետական Հայաստանը բարձր կուլտուրայի և զարգացած գիտության երկիր է։ Ներկայումս մեր ռեսպուբլիկայում գործում է ավելի քան 1.300 դպրոց, որոնցում սովորում են 412.000 երեխաներ։ Ռեսպուբլիկայի 11 բուհերում սովորում են 26 հազար ուսանող, իսկ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորում է ավելի քան 20 հազար մարդ։ Մեր ռեսպուբլիկայում ներկայումս կա 85 գիտական հիմնարկություն, իսկ գիտական աշխատողների և գիտական աշխատանքով զբաղվողների թիվը կազմում է մոտ 6.200 մարդ։ Ռեսպուբլիկայի գիտնականները աչքի ընկնող հայտնագործություններ են կատարել աստղագիտության, կոսմիկական ճառագայթման, ատոմի միջուկի ուսումնասիրության, մաթեմատիկայի, ֆիզիկայի, մեխանիկայի, երկրաբանության, քիմիայի, բժշկության բնագավառներում, որոնք հայտնի են ոչ միայն Սովետական Միու-

թյունում, այլ նաև համաշխարհային գիտական հասարակայնությանը։

Ռեսպուբլիկայում բուռն թափով առաջ է գնում բնակարանային շինարարությունը։ Միայն պետական պլանով հատկացված միջոցների հաշվին ընթացիկ տարվա առաջին կիսամյակում շահագործման հանձնըվեցին 171 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի շենքեր։

Հիրավի, վիթխարի են մեր ռեսպուբլիկայի ձեռք բերած նվաճումները, բայց է՛լ ավելի հոյակապ են նրա հեռանկարները։

Ռեսպուբլիկայի աշխատավորները ամեն ջանք գործ են դնում, որպեսզի ՀԿՊ XXIII համագումարը արտադրական նոր նվաճումներով դիմավորեն։

Մեծ Հոկտեմբերի փառապանծ տարեդարձը մենք նշում ենք համաշխարհային սոցիալիստական սիստեմի հետագա ամրապնդման, կապիտալիստական սիստեմի հետ տնտեսական մրցության բնագավառում նրա ձեռք բերած նորանոր հաղթանակների պայմաններում։ Սոցիալիստական սիստեմի երկրներում հաջողությամբ են կատարվում ժողովրդական տնտեսության զարգացման պլանները, իսկ արդյունաբերության զարգացման տեմպերով նրանք վաղուց արդեն առաջ են անցել կապիտալիստական երկրներից, դրանով իսկ անհերքելիորեն հաստատելով կապիտալիզմի հանդեպ սոցիալիստական սիստեմի անվիճելի առավելությունները։ Սոցիալիստական համագործակցության երկրների արդյունաբերական արտադրանքը արդեն կազմում է համաշխարհային արդյունաբերական արտադրանքի 37 տոկոսը։ Շատ հեռու չէ այն ժամանակը, երբ սոցիալիստական երկրները կարտադրեն համաշխարհային արդյունաբերական արտադրանքի կեսից ավելին և համաշխարհային պատմական հաղթանակ կտանեն կապիտալիզմի հետ տնտեսական մրցության մեջ։ Գնալով աճում է սոցիալիստական երկրների տնտեսական, կուլտուրական և գիտա-տեխնիկական համագործակցությունը, որը սոցիալիստական յուրաքանչյուր երկրի հաջող զարգացման գրավականն է։ Մեր պարտիան միշտ վարել և վարում է սոցիալիստական երկրների եղբայրական կապերի հետագա ամրապնդման ու փոխադարձ օգնության քաղաքականություն, դրանով իսկ նպաստելով այդ երկրներում սոցիալիզմի հաջող կառուցմանը։



Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 46-րդ տարեդարձը մենք տոնում ենք աշխարհում Սովետական Միության հեղինակության էլ ավելի բարձրացման, պատերազմի հրձիգների դեմ մեր արտաքին քաղաքականության ձեռք բերած նոր խոշոր հաղթանակի պայմաններում։ Սովետական Միությունը անշեղորեն ղեկավարվում է խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքով։ Սովետական պետությունը ելնում է այն փաստից, որ ներկայումս համաշխարհային պատերազմը անխուսափելի չէ, որ այն կարելի է և պետք է կանխել։ Խաղաղ գոյակցության գաղափարը նյութական ուժ է դարձել, նրա շուրջը միավորվում են մարդկության հսկայական զանգվածներ։ Միջազգային ասպարեզում ուժերի հարաբերակցությունը խիստ կերպով փոխվել է հօգուտ սոցիալիզմի։ Սոցիալիզմն այժմ դարձել է մի անհաղթահարելի ուժ և նրանք, ովքեր կցանկանան փորձել նրա հզորությունը, ամենակործան հարված կստանան։

Սովետական պետությունը վճռականորեն պայքարել ու պայքարում է հանուն խաղաղության։ Մեր խաղաղասիրական քաղաքականությունը բխում է սոցիալիստական սիստեմի բնույթից, սովետական ժողովրդի և սոցիալիստական մյուս երկրների արմատական շահերից։ Սոցիալիզմի և կոմունիզմի կառուցումը միաձուլվում է խաղաղության պաշտպանության հետ։ Որքան ամուր ու տևական լինի խաղաղությունը, այնքան ավելի հաջողությամբ կընթանա սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցումը։

Խաղաղ գոյակցությունը բոլորովին էլ չի նշանակում հաշտություն իմպերիալիզմի հետ, այն համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի և կապիտալիզմի միջև մղվող դասակարգային պայքարի ձև է։ Հենց այդ պայքարում էլ սոցիալիզմը գործնականում, օրինակով ցուցադրում է իր գերազանցությունը։ Բացի այդ, խաղաղության ամրապնդումը, խաղաղ գոյակցության սկզբունքի հաստատումը ոչ միայն չի թուլացնում, այլև ուժեղացնում է համաշխարհային ռևոլյուցիոն պրոցեսը։ Խաղաղ գոյակցության պայմաններում հաջողությամբ է ծավալվում նաև ազգային-ազատագրական շարժումը։ Սովետական Միությունը, սոցիալիստական երկրները ջերմորեն պաշտպանում են Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդների ազատագրական շարժումը ընդդեմ

իմպերիալիզմի, նրանց ցույց են տալիս բարոյական-քաղաքական և նյութական օգնություն։

Խաղաղ գոյակցության քաղաքականության կարևոր հաղթանակը հանդիսացավ մթնոլորտում, տիեզերական տարածությունում և ջրի տակ միջուկային զենքի փորձարկումների արգելման մասին Մոսկվայի պայմանագրի կնքումը Սովետական Միության, ԱՄՆ-ի և Անգլիայի կողմից։ Դա միջազգային մեծ նշանակություն ունեցող իրադարձություն է։ Սովետական Միությունը տարիներ շարունակ պայքար է մղում միջուկային զենքի փորձարկումների դադարեցման համար։ Դա պաշտպանություն էր գտնում բոլոր խաղաղասեր պետությունների և ժողովուրդների կողմից։ Ձեռք բերված համաձայնությունը միջուկային զենքի փորձարկումների մասնակի արգելման մասին ցույց տվեց, որ շահագրգռված պետությունների ցանկության ու ջանքերի դեպքում, խոշոր տերությունների բարի կամքի առկայության դեպքում կարելի է հաջողության հասնել փոխադարձաբար ընդունելի պայմաններով միջազգային պրոբլեմների լուծման գործում։ Միջուկային զենքի փորձարկումների դադարեցման պայմանագրի կնքումը կնպաստի միջազգային լարվածության ընդհանուր թուլացմանը և դրանով իսկ՝ վաղուց հասունացած միջազգային հարցերի լուծման համար նպաստավոր իրադրության ստեղծմանը։

Սակայն չպետք է մոռանալ, որ միջուկային զենքի փորձարկումների արգելումը դեռևս չի նշանակում սպառազինությունների մրցավազքի դադարեցում ու հետևաբար ինքն իրեն չի կարող կանխել պատերազմի վտանգը։ Այդ միջոցառումը չի վերացնում նաև սպառազինությունների բեռը, որոնց արտադրության վրա պետությունները հսկայական նյութական ռեսուրսներ են ծախսում։ Այդ պատճառով էլ սովետական կառավարությունը պահանջում է գործադրել նոր ջանքեր, որոնք հանգեցնեն խաղաղության ամրապնդման, մարդկության երազանքի իրագործման՝ ընդհանուր և լրիվ զինաթափման։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի գաղափարների հաղթանակի վառ վկայություններից մեկը միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման հզոր աճն է ներկայումս։ Համաշխարհային կոմունիստական շարժումը դարձել է մեր ժամանակի ամենահզոր ուժը։ Միջազգային բանվոր դասակարգի հաղթա-



նակի երաշխիքը սոցիալիզմի երկրների, համաշխարհային կոմունիստական շարժման միասնությունն է։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմը պահանջում է, որպեսզի յուրաքանչյուր կոմունիստական պարտիա իրականում պայքարի միջազգային կոմունիստական շարժման համախմբվածության համար, թանկ գնահատի կոմունիստական շարժման համախմբվածությունը և հոգ տանի նրա ամրապնդման համար։ Սովետական Միության կոմունիստական պարտիան միշտ ղեկավարվել և ղեկավարվում է այդ բարձր սկզբունքով, եղբայրական պարտիաների ներկայացուցիչների Մոսկվայի խորհրդակցությունների Դեկլարացիայի և Հայտարարության սկզբունքներով։ Մեր պարտիայի Կենտկոմի ձեռնարկած բոլոր քայլերը թելադրված են կոմունիստական շարժման բարձրագույն շահերով, եղբայրական պարտիաների միջև ծագած տարաձայնությունները փոխըմբռնման ոգով հաղթահարելու, եղբայրական բոլոր պարտիաների մարտական ու անխախտ համախմբվածությունը ամրապնդելու ձգտումով։

Կոմունիստները ներկայումս ունեն շատ թշնամիներ, որոնց դեմ պետք է ուղղված լինեն նրանց բոլոր ուժերը։ Առջևում դեռևս կան շատ մարտեր կապիտալիզմի և ռեակցիայի ուժերի դեմ։ Ահա թե ինչու ներկայումս ավելի, քան երբեք, հարկավոր է կոմունիստական շարժման անխախտ միասնություն՝ մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների հիման վրա։

Մեր պարտիան ու կառավարությունը ուժեր չեն խնայել և չեն խնայի բոլոր սոցիալիստական երկրների ժողովուրդների հետ, չին ժողովրդի հետ եղբայրական բարեկամությունն ամրապնդելու համար։ Սակայն Չինաստանի կոմպարտիայի ղեկավարների վերջին տարիների ելույթներն ու գործերը ջլատում են մեր պարտիաների միասնությունը, մեր ժողովուրդների միասնությունը։ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները արդիականության մի շարք կարևորագույն հարցերի շուրջը բռնել են սխալ դիրք, որը ուղղակի կերպով հակադրվում է համաշխարհային կոմունիստական շարժման դիրքին։ Դա վերաբերում է հատկապես պատերազմի և խաղաղության, ընդհանուր զինաթափման և միջուկային զենքի փորձարկումների արգելման, կապիտալիզմից սոցիալիզմին անցման ձևերի և մի քանի այլ հարցերի։ Այդ սխալ հայացքները և դրանց հետ կապված պրակտիկ գործունեության սխալները խարխլում են համաշխար-

հային սոցիալիստական լագերի և միջազգային կոմունիստական շարժման միասնությունը։

Ջինաստանի կոմպարտիայի ղեկավարության նման դիրքը օրինական վրդովմունք և հակահարված է առաջացնում եղբայրական մարքս-լենինյան պարտիաների կողմից։

Սովետական Միության կոմունիստական պարտիան եղբայրական բոլոր պարտիաների հետ միասին պայքարել և պայքարում է հանուն բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների միասնության, հանուն խաղաղության, դեմոկրատիայի, ազգային անկախության և սոցիալիզմի։

ՍՄԿՊ Կենտկոմը գործի է դնում բոլոր ջանքերը հաղթահարելու համար այն տարաձայնությունները, որոնք գոյություն ունեն մեր պարտիայի և Ջինաստանի կոմպարտիայի ղեկավարության միջև։ Դա անհրաժեշտ է սոցիալիստական լագերի և միջազգային կոմունիստական շարժման միասնության հետագա ամրապնդման, կապիտալի ուժերի դեմ նոր հաղթանակների նվաճման համար։

Սովետական ժողովուրդը լենինյան կոմունիստական պարտիայի առաջնորդությամբ կենսագործում է մեծ Հոկտեմբերի գաղափարները, իր անձնազոհ աշխատանքով կառուցում է կոմունիզմի լուսավոր շենքը։ Ոգեշընչված լենինիզմի պայծառ գաղափարներով, ուղեցույց ունենալով ՍՄԿՊ XXII համագումարի և պարտիայի Կենտկոմի պլենումների պատմական որոշումները՝ սովետական մարդիկ վստահորեն գնում են դեպի Մարքսի-Էնգելսի-Լենինի մեծ գործի վերջնական հաղթանակը։







# ԼԱՎ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓԱՅԼՈՒՆ ԱՐԴՅՈՒՆՔԸ



1963 թվականի հուլիսի 25-ը միշտ վառ կմնա Երևանի ալյումինի գործարանի էլեկտրոլիզի ցեխի Մ. Հովհաննիսյանի բրիգադի անդամների հիշողության մեջ։ Այդ օրը սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման արդյունքները ամփոփելու համար գործարանի կուլտուրայի պալատն էին հավաքվել աշխատանքի առաջավորները, արտադրության հրամանատարները։ Ի թիվս մի քանի բրիգադների, կոմունիստական աշխատանքի բրիգադի պատվավոր կոչման արժանացավ նաև ագիտատոր Հովհաննիսյանի ղեկավարած էլեկտրոլիզնիկների բրիգադը, որի գրեթե բոլոր անդամներն էլ գործարանում աշխատում են երկար տարիներ և ունեն աշխատանքի հարուստ փորձ։

Բրիգադը բաղկացած է 12 հոգուց, որից երկուսը պարտիայի անդամ են, մեկը՝ պարտիայի անդամության թեկնածու, իսկ մնացածները անպարտիականներ են, որոնք ունեն թերի միջնակարգ և միջնակարգ կրթություն։

Բրիգադի անդամները ջանք չեն խնայում արտադրական նորմաները բոլոր ցուցանիշներով կատարելու և հարազատ երկրին ավելի շատ ու բարձրորակ արտադրանք տալու համար։ Բրիգադը այս տարվա առաջին կիսամյակի պլանը կատարել է 101,9 տոկոսով։ Եթե մեկ բանվորի արտադրանքը 1962 թվականին կազմել է 14,4 տոննա մետաղ, ապա 1963 թվականի առաջին կիսամյակում այն կազմել է 15,3 տոննա։ Անցյալ տարի բրիգադը խնայել է 500 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, իսկ 1963 թվականի առաջին կիսամյակում՝ 260 հազար կիլովատ-ժամ։ Որպես կանոն բրիգադը սիստեմատիկորեն տալիս է լավորակ արտադրանք։ Բրիգադը այս հաջողություններին հասել է շնորհիվ աշխատանքի նկատմամբ ունեցած բարձր պատասխանատվության, կոմունիստական վերաբերմունքի։ Բրիգադի անդամները սիստեմատիկաբար հոգ են տանում, որպեսզի կատարելագործեն տեխնոլոգիական պրոցեսը։

Նրանք մասնակցում են տեխնիկական ուսուցման խմբակի պարապմունքներին, միմյանց օգնում են հասկանալու ու ճիշտ վարելու էլեկտրոլիզի տեխնոլոգիան, ձգտում են ավելի քիչ էլեկտրաէներգիայի ծախսման պայմաններում ավելի շատ մետաղ կորզել հանքանյութից, անում են ռացիոնալիզատորական և նորարարական առաջարկներ: Այս ամենի շնորհիվ բրիգադը հասել է լուրջ հաջողությունների:

Առաջներում էլեկտրոլիզի վաննան մշակում էին ցածր լարման տակ: Նման պայմաններում տեղի էր ունենում մետաղի որոշ կորուստ և էլեկտրաէներգիայի զգալի ծախս: Բրիգադի անդամների ակտիվ աջակցությամբ և գործարանի ինժեներա-տեխնիկական կազմի կողմից տեխնոլոգիական պրոցեսի կատարելագործման շնորհիվ այժմ վաննան մշակվում է բարձր լարման տակ, որի շնորհիվ ստացվում է ավելի շատ մետաղ և զգալի չափով էլեկտրաէներգիա է խնայվում:

Բրիգադի անդամները լինելով արտադրության առաջավորներ, միաժամանակ ակտիվորեն մասնակցում են գործարանի, ցեխի պարտիական և հասարակական կյանքին: Բրիգադիր Մ. Հովհաննիսյանը Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի դեպուտատ է, ռեսպուբլիկայի Գերագույն սովետի Նախագահության անդամ: Պատվով կատարելով իր աշխատանքային պարտականությունները նա ակտիվորեն մասնակցում է նաև ռեսպուբլիկայի կառավարման գործին, լուծում բազմաթիվ համապետական խնդիրներ: Միաժամանակ նա ուշադրությամբ ունկնդրում է աշխատավորների դիմումներին ու բողոքներին և լուծում դրանք: Նրա մտածված ու ջանասեր աշխատանքի շնորհիվ լուծվել են ալյումինի գործարանի բանվորական ավանի, Արաբկիրի և այլ թաղամասերի բարեկարգման, բազմաթիվ քաղաքացիների բնակարանային և այլ հարցեր: Վերջերս նա մասնակցեց Բոգոսլավսկ քաղաքում կայացած ալյումինի արտադրության առաջավորների համամիութենական խորհրդակցությանը: Բրիգադի անդամներից կոմունիստ Բ. Շարանյանը հանդիսանում է հերթափոխության պարտիական խմբի կազմակերպիչը, իսկ Մ. Սարգսյանը՝ արհմիութենական կազմակերպության հերթափոխ խմբի կազմակերպիչն է: Ամբողջ բրիգադով ակտիվորեն մասնակցում են ցեխի, հերթափոխության ժողովներին, արտադրական խորհրդակցություններին, պատի թերթի աշխատանքներին և



այլ միջոցառումներին: Բրիգադի անդամներից մի քանիսը ակտիվորեն մասնակցում են սպորտային աշխատանքներին, զբաղվում են սեղանի թենիսով, վոլեյբոլով և սպորտի այլ ձևերով:

Բրիգադի անդամները ցուցաբերում են իսկական կոմունիստական վերաբերմունք դեպի աշխատանքը, դեպի աշխատանքային ընկերները: Բրիգադի յուրաքանչյուր անդամ ձգտում է նորմալ աշխատանքային պայմաններ ստեղծել իրենց փոխարինող բրիգադի համար: Դրա շնորհիվ բրիգադի աշխատանքային տեղամասը միշտ մաքուր է և այդ հնարավորություն է տալիս աշխատանքային յուրաքանչյուր ժամը արդյունավետ օգտագործել:

Այսպիսով էլեկտրոլիզնիկների բրիգադի անդամները ղեկավարվելով «աշխատել և ապրել կոմունիստաբար» սկզբունքով, կենսագործում են ՍՄԿՊ XXII համագումարի որոշումները, պարտիայի նոր ծրագիրը:

Ն. ՍԱՂԱԹԵԼՅԱՆ

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

## ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ ՄԵԾ ԳՈՐԾԵՐԸ

(Տպագրվում է կոմերիտմիության կազմավորման 45-ամյակի առթիվ, թվեր և փաստեր)

Այս տարվա նոյեմբերի 28-ին լրանում է լենինյան կոմերիտմիության 45-ամյակը: Կոմերիտմիությունը լինելով հարազատ կոմունիստական պարտիայի հավատարիմ օգնականը, նրա ղեկավարությամբ անցել է աշխատանքի ու պայքարի երկար և փառավոր ուղի: Ահա համառոտ տեղեկություններ կոմերիտմիության պանծալի գործերի մասին:

*Դեռևս առաջին հնգամյակի տարիներին, ոչ լրիվ տվյալներով, կարևորագույն շինարարություններում և արդյունաբերության տարբեր ճյուղերում աշխատանքի ուղարկվեցին ավելի քան 350 հազար կոմերիտականներ:*

*Ներկայումս Սովետական Միության արդյունաբերության, շինարարության մեջ և տրանսպորտում աշխատում են ավելի քան 4 միլիոն 800 հազար կոմերիտական բանվորներ, 880 հազար ինժեներներ ու տեխնիկներ:*

Միայն վերջին տարիներս կոմերիտականների և երիտասարդության անմիջական մասնակցությամբ երկրում կառուցվել է 48 դոմենյան և մարտենյան վառարաններ, մետաղի գլանվածքի 34 գործարան և ցեխ, քիմիական 54 ձեռնարկություն, քարածխի 30 հանք, գցվել է 8 հազար և էլեկտրիֆիկացվել ավելի քան 6 հազար կիլոմետր երկաթուղագիծ։

Այս տարի կոմերիտմիությունը վերցրել է մեծ քիմիայի 50 նորակառույցների շեֆությունը և հաջողությամբ գործը առաջ է տանում։

Անցյալ տարի 150 հազար տղաներ և աղջիկներ կոմերիտական ուղեգրերով աշխատանքի մեկնեցին անասնապահական ֆերմաները։

Կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվները 1962 թվականին աճեցրին 17,2 միլիոն հեկտար եգիպտացորեն և լոբազգի կուլտուրաներ։ Կոմերիտական շատ օղակներ նույն տարում յուրաքանչյուր հեկտարից ստացան 80—100 ցենտներ հատիկ եգիպտացորենի բերք։

Անցած տասը տարվա ընթացքում Սիբիրի և մեր երկրի հեռավոր մյուս մասերի շինարարություններում աշխատանքի մեկնեցին 1,5 միլիոն տղաներ ու աղջիկներ՝ գերազանցապես կոմերիտականներ։

Ներկայումս կոմերիտմիությունը վերցրել է երկրի 2 հազար շինարարական օբյեկտների շեֆությունը, որոնցից 160-ը համամիութենական հարվածային շինարարություններ են։

Մեր երկրում ծավալված կոմունիստական աշխատանքի համար շարժման մեջ ընդգրկված է 23 միլիոն մարդ, որոնց մեծ մասը կոմերիտականներ են։

Ներկայումս գյուղում աշխատում են ավելի քան 4 միլիոն կոմերիտականներ կամ 2 անգամ շատ, քան 1953 թվականին։ Գյուղում աշխատող կոմերիտականներից 120 հազարը գյուղատնտեսության մասնագետներ են։

Եթե 1918 թվականին կոմերիտականների թիվը հասնում էր ընդամենը 22 հազարի, ապա այժմ նրանց թիվը կազմում է ավելի քան 20 միլիոն։ Վերջին տասնամյակում ավելի քան 2,5 միլիոն կոմերիտականներ ընդունվել են ՍՄԿՊ շարքերը։

Անձնուրաց աշխատանքի համար պարտիան միշտ էլ բարձր է գնահատել կոմերիտմիությանը։ Ներկայումս աշխատավորների դե-



պուտատների ավելի քան 22 տոկոսը երիտասարդներ են։ ՍՍՌՄ Գերագույն սովետի ավելի քան 200 դեպուտատներ 30 տարեկանից փոքր են։

Երիտասարդ շինարարներից ավելի քան 8 հազար հոգի պարգևատրված են շքանշաններով և մեդալներով, 30 հոգի արժանացել են սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչմանը։

Ուրախալի է իմանալ, որ կոմերիտականները լավ աշխատելու հետ միասին մեծ հաջողություն են ձեռք բերել նաև իրենց կուլտուրական-կրթական մակարդակը բարձրացնելու գործում։ Այժմ յուրաքանչյուր երկրորդ կոմերիտականը ունի միջնակարգ և բարձրագույն կրթություն, յուրաքանչյուր տասներորդը՝ մասնագիտական կրթություն։

Լենինյան կոմերիտմիությունը իրեն փառքով օծեց նաև Հայրենական մեծ պատերազմում։ Հերոսության, քաջության ու արիության համար ավելի քան 3,5 միլիոն կոմերիտականներ պարգևատրվեցին շքանշաններով և մեդալներով։ Նրանցից յոթ հազար հոգի արժանացան Սովետական Միության հերոսի կոչման։

Հերոսական գործերով առանձնապես աչքի ընկավ Կրասնոդոնի «Երիտասարդ գվարդիա» կոմերիտական ընդհատակյա կազմակերպությունը։ Այդ կազմակերպության 5 անդամները արժանացան Սովետական Միության հերոսի կոչման, երեքը՝ Կարմիր դրոշ շքանշանի, 36 հոգի՝ Հայրենական պատերազմի առաջին աստիճանի շքանշանի, 6 հոգի՝ Կարմիր աստղ շքանշանի, 66 հոգի՝ Հայրենական պատերազմի պարտիզան առաջին աստիճանի մեդալի։

Կոմերիտականները աշխատանքային նորանոր սխրանքներ են կատարում մեր ռեսպուբլիկայի գործարաններում, կոլտնտեսություններում, սովխոզներում և կառույցներում։ Այժմ մեր ռեսպուբլիկայում 35 հազար պատանիներ ու աղջիկներ պայքարում են կոմերիտական աշխատանքի բարձր կոչմանն արժանանալու համար։

Գորիսի արտադրական վարչությունում գովեստով են խոսում Քարահունջի կոլտնտեսության երիտասարդ հովիվներ Սերյոժա Գևորգյանի և Կոլյա Միրզոյանի մասին, որոնք այս տարվա միայն առաջին խուզից յուրաքանչյուր ոչխարից ստացան 2,7 կիլոգրամ բուրդ։

Նոյեմբերյանի արտադրական վարչության Ծաթեր գյուղում արտադրության իսկական փարոս է դարձել երիտասարդ կթվորուհի Արաքսյա Հարությունյանը, որին իր լավ աշխատանքի համար ընտրել են Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի դեպուտատ։

Միայն վերջին տարիներս կոմերիտականների և երիտասարդության անմիջական մասնակցությամբ երկրում կառուցվել է 48 դոմենյան և մարտենյան վառարաններ, մետաղի գլանվածքի 34 գործարան և ցեխ, քիմիական 54 ձեռնարկություն, քարածխի 30 հանք, գցվել է 8 հազար և էլեկտրիֆիկացվել ավելի քան 6 հազար կիլոմետր երկաթուղագիծ։

Այս տարի կոմերիտմիությունը վերցրել է մեծ քիմիայի 50 նորակառույցների շեֆությունը և հաջողությամբ գործը առաջ է տանում։

Անցյալ տարի 150 հազար տղաներ և աղջիկներ կոմերիտական ուղեգրերով աշխատանքի մեկնեցին անասնապահական ֆերմաները։

Կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվները 1962 թվականին աճեցրին 17,2 միլիոն հեկտար եգիպտացորենի և լոբազգի կուլտուրաներ։ Կոմերիտական շատ օղակներ նույն տարում յուրաքանչյուր հեկտարից ստացան 80—100 ցենտներ հատիկ եգիպտացորենի բերք։

Անցած տասը տարվա ընթացքում Սիբիրի և մեր երկրի հեռավոր մյուս մասերի շինարարություններում աշխատանքի մեկնեցին 1,5 միլիոն տղաներ ու աղջիկներ՝ գերազանցապես կոմերիտականներ։

Ներկայումս կոմերիտմիությունը վերցրել է երկրի 2 հազար շինարարական օբյեկտների շեֆությունը, որոնցից 160-ը համամիութենական հարվածային շինարարություններ են։

Մեր երկրում ծավալված կոմունիստական աշխատանքի համար շարժման մեջ ընդգրկված է 23 միլիոն մարդ, որոնց մեծ մասը կոմերիտականներ են։

Ներկայումս գյուղում աշխատում են ավելի քան 4 միլիոն կոմերիտականներ կամ 2 անգամ շատ, քան 1953 թվականին։ Գյուղում աշխատող կոմերիտականներից 120 հազարը գյուղատնտեսության մասնագետներ են։

Եթե 1918 թվականին կոմերիտականների թիվը հասնում էր ընդամենը 22 հազարի, ապա այժմ նրանց թիվը կազմում է ավելի քան 20 միլիոն։ Վերջին տասնամյակում ավելի քան 2,5 միլիոն կոմերիտականներ ընդունվել են ՍՄԿՊ շարքերը։

Անձնուրաց աշխատանքի համար պարտիան միշտ էլ բարձր է գնահատել կոմերիտմիությանը։ Ներկայումս աշխատավորների դե-



պուտատների ավելի քան 22 տոկոսը երիտասարդներ են։ ՍՍՌՄ Գերագույն սովետի ավելի քան 200 դեպուտատներ 30 տարեկանից փոքր են։

Երիտասարդ շինարարներից ավելի քան 8 հազար հոգի պարգևատրված են շքանշաններով և մեդալներով, 30 հոգի արժանացել են սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչմանը։

Ուրախալի է իմանալ, որ կոմերիտականները լավ աշխատելու հետ միասին մեծ հաջողություն են ձեռք բերել նաև իրենց կուլտուրական-կրթական մակարդակը բարձրացնելու գործում։ Այժմ յուրաքանչյուր երկրորդ կոմերիտականը ունի միջնակարգ և բարձրագույն կրթություն, յուրաքանչյուր տասներորդը՝ մասնագիտական կրթություն։

Լենինյան կոմերիտմիությունը իրեն փառքով ծածկեց նաև Հայրենական մեծ պատերազմում։ Հերոսության, քաջության ու արիության համար ավելի քան 3,5 միլիոն կոմերիտականներ պարգևատրվեցին շքանշաններով և մեդալներով։ Նրանցից յոթ հազար հոգի արժանացան Սովետական Միության հերոսի կոչման։

Հերոսական գործերով առանձնապես աչքի ընկավ Կրասնոդոնի «Երիտասարդ գվարդիա» կոմերիտական ընդհատակյա կազմակերպությունը։ Այդ կազմակերպության 5 անդամները արժանացան Սովետական Միության հերոսի կոչման, երեքը՝ Կարմիր դրոշ շքանշանի, 36 հոգի՝ Հայրենական պատերազմի առաջին աստիճանի շքանշանի, 6 հոգի՝ Կարմիր աստղ շքանշանի, 66 հոգի՝ Հայրենական պատերազմի պարտիզան առաջին աստիճանի մեդալի։

Կոմերիտականները աշխատանքային նորանոր սխրանքներ են կատարում մեր ռեսպուբլիկայի գործարաններում, կոլտնտեսություններում, սովխոզներում և կառույցներում։ Այժմ մեր ռեսպուբլիկայում 35 հազար պատանիներ ու աղջիկներ պայքարում են կոմերիտական աշխատանքի բարձր կոչմանն արժանանալու համար։

Գորիսի արտադրական վարչությունում գովեստով են խոսում Քարահունջի կոլտնտեսության երիտասարդ հովիվներ Սերյոժա Գևորգյանի և Կոլյա Միրզոյանի մասին, որոնք այս տարվա միայն առաջին խուզից յուրաքանչյուր ոչխարից ստացան 2,7 կիլոգրամ բուրդ։

Նոյեմբերյանի արտադրական վարչության Ծաթեր գյուղում արտադրության իսկական փարոս է դարձել երիտասարդ կթվորուհի Արաքսյա Հարությունյանը, որին իր լավ աշխատանքի համար ընտրել են Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի դեպուտատ։

**Ա**րտաշատի արտադրական վարչության Քաղցրաշենի կոլտնտեսության Հովհաննես Հովհաննիսյանի ղեկավարած երիտասարդական բրիգադը «Հարուստ հեկտարի» մրցությունում միշտ էլ հաղթող է ճանաչվել։

**Լ**ենինականի Չկալովի անվան № 2 կարի ֆաբրիկայի կոմերիտական բանվորուհիներ Սուսաննա Շահամիրյանը և Զարիկ Հովհաննիսյանը իրենց արտադրական պլանները գերակատարում են 110—115 տոկոսով։

**Է**ջմիածնի պլաստմասսաների գործարանի երիտասարդ նորարարները կատարել են 27 առաջարկություն, որից քանը արդեն ներդրված է արտադրության մեջ և գործարանին կտա տարեկան շուրջ ինը հազար ռուբլու օգուտ։

**Ս**իսիանի արտադրական վարչության Նորավանի սովխոզի կոմերիտական կազմակերպությունը նվաճել է պարտիական կոմիտեի փոխանցիկ դրոշը։ Կոմերիտականների ջանքերով անցյալ տարվա համեմատությամբ 1.000 ցենտներով ավելի կաթ է արտադրվել։

**Ա**րտաշատի արտադրական վարչության Մխչյանի կոլտնտեսության կոմերիտական օղակավարներ Թամարա Ներսիսյանը, Աստղիկ Գրիգորյանը, Նորա Խաչատրյանը, Առաքել Անդրեասյանը եգիպտացորենի յուրաքանչյուր հեկտարից 40 ցենտների փոխարեն ստացան 63—65 ցենտներ հատիկ և 285-ի փոխարեն 470 ցենտներ կանաչ զանգված։

**Ե**ղեգնաձորի արտադրական վարչության Կեչուտ գյուղի կաթնապրանքային սովխոզը, կոմերիտականների ու երիտասարդների ուժերով ստեղծել է երկու տարվա կերի պաշար։

**Ե**րևանի էլեկտրալամպերի գործարանի երիտասարդ ռացիոնալիզատորները կատարել են ավելի քան 194 ռացիոնալիզատորական առաջարկություն, որից արտադրության մեջ ներդրվել է 137-ը։

**Ե**րևանի ալյումինի գործարանի 70 երիտասարդ ռացիոնալիզատորների ակտիվ մասնակցությամբ արտադրության մեջ ներդրվել են 80 նորարարական առաջարկություններ, որոնցից ստացված տնտեսական օգուտը անցնում է մի քանի տասնյակ հազար ռուբլուց։

**Ե**րևանի «Պոլիվինիլացետատ» գործարանի համամիութենական կոմերիտական հարվածային կառույցում աշխատող № 2 շինվարչության կոմերիտականների ու երիտասարդների անձնվեր աշխատանքի շնորհիվ ժամանակին շահագործման հանձնվեց ացետիլցելյուլոզի կոմպլեքսը։

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

ԻՆՏԵԳՐԱՑԻԱ— Լատիներեն բառ է, նշանակում է վերականգնում, տարբեր մասերի միավորում մի ամբողջության մեջ։ Միջազգային քաղաքականության մեջ ինտեգրացիայի աչքի ընկնող օրինակ է հանդիսանում «Ընդհանուր շուկա» պետական-մոնոպոլիստական միավորումը։ Այն սկսել է գործել 1958 թվականի հունվարի 1-ից վեց երկրների՝ Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայի, Ֆրանսիայի, Իտալիայի, Բելգիայի, Հոլանդիայի և Լյուքսեմբուրգի մասնակցությամբ։ Այդ կապիտալիստական միավորման նպատակն է աստիճանաբար իրականացնել հետևյալ միջոցառումները. «Ընդհանուր շուկայի» երկրների միջև վերացնել առևտրական արգելքները, թույլ տալ կապիտալի ազատ տեղափոխում, արտաքին առևտրի մեջ սահմանել միասնական մաքսային տարիֆ, համաձայնեցված քաղաքականություն վարել գյուղատնտեսության և տրանսպորտի բնագավառում, բանվորական ուժի տեղափոխման և վարձատրման գործում և այլն։

Եվրոպայի «ինտեգրացիան» մոնոպոլիստական բուրժուազիայի նոր փորձն է լուծելու կապիտալիստական սիստեմի հակասությունները և, առաջին հերթին, արտադրության հասարակական բնույթի ու յուրացման կապիտալիստական ձևի միջև գոյություն ունեցող հիմնական հակասությունը։

Այդ ինտեգրացիան կապիտալիստական շուկայի բաժանման համար մղվող պայքարի պետական մոնոպոլիստական ձևն է և իր սուր ծայրով ուղղված է ոչ միայն սոցիալիստական ու գաղութակալության լծից ազատված երկրների, այլև հենց կապիտալիստական մյուս երկրների դեմ։

ԱՊԱՏՐԻԴՆԵՐ— Անձնավորություն՝ առանց քաղաքացիության։

Ապատրիդ վիճակ կարող է ստեղծվել հետևյալ պատճառներից. օրենքի ուժով ավտոմատ կերպով կորցված քաղաքացիությունը, որը չի փոխարինվել նոր պետության քաղաքացիություն ձեռք բերելով։ Ապատրիդներ կարող են լինել նաև երեխաներ, որոնք ծնվել են քաղաքացիություն չունեցող ծնողներից և հետագայում որևէ պետության կողմից քաղաքացիություն չեն ստացել։ Ապատրիդները չեն օգտվում ընտրական կամ այլ իրավունքներից, չունեն դիվանագիտական պաշտպանության իրավունք որևէ պետության կողմից։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո իմպերիալիստական պետությունները ապատրիդներին օգտագործում են ՍՍՌՄ-ի դեմ լրտեսական ու դիվերսիոն նպատակներով։

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Ազատարար Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Ռևոլյուցիայի խնդիրները, *Երկեր, հատոր 26, էջ 53-65, Հայպետհրատ, 1951։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Սովետական իշխանության հերթական խնդիրները, *Երկեր, հատոր 27, էջ 279—333, Հայպետհրատ, 1951։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը պարտիայի XXII համագումարին, *Հայպետհրատ, 1961։*

## 2. Սովետական Հայաստանը մեծ հոկտեմբերի ծնունդն է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ* — Հեռագիր Հայաստանի Ռազմական-ռևոլյուցիոն կոմիտեի նախագահին, *Երկեր, հատոր 31, էջ 550, Հայպետհրատ, 1952 ։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ* — Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին, *Երկեր, հատոր 32, էջ 402-405, Հայպետհրատ, 1952։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ* — Ճառ, արտասանած 1961 թվականի մայիսի 6-ին Երևան քաղաքում տեղի ունեցած հանդիսավոր նիստում՝ նվիրված Հայաստանում Սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմունիստական պարտիայի կազմավորման 40-ամյակին, *Հայպետհրատ, 1961։*

*ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ* — Զեկուցում Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի և Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի հանդիսավոր նիստում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի մայիսի 7-ի համարում։*

## 3. Մեր երկրում ստեղծվում է երաշխավորված բարձր բերքի ստացման կայուն բազա

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻ* ճառը Հյուսիսային Կովկասի գյուղատնտեսության աշխատողների Կրասնոդարի խորհրդակցությունում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հոկտեմբերի 3-ի համարում։*








Ջրովի դաշտերը մեծ հարստություն են, *ինֆորմացիոն նյութեր Ն. Ս. Խրուշչովի «Վոլգա-Դոն»-ի սովխոզ այցելելու մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի սեպտեմբերի 18-ի համարում։*

Արդյունավետ օգտագործել հողի յուրաքանչյուր հեկտարը, *ինֆորմացիոն նյութեր Ն. Ս. Խրուշչովի Վոլգոգրադի մարզն այցելելու մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի սեպտեմբերի 19-ի համարում։*

## 4. Անդադրում պայքարել անտնտեսվարության դեմ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ* — Ավելի լրիվ օգտագործել սոցիալիստական էկոնոմիկայի ռեզերվները, վերացնել շռայլությունն ու անտնտեսվարությունը։ Ամեն կերպ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, *ՍՄԿԿ XXII համագումարին տված պարտիայի Կենտկոմի հաշվետվությունից, էջ 63-78, Հայպետհրատ, 1961։*

*Լ. Ֆ. ԻԼՅԻՉՈՎ*— Մեր կոմունիստական աշխատանքի հաղթանակին կհասնենք աշխատանքի նկատմամբ սեր դաստիարակելու միջոցով, *ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1963 թ.) պլենումում արված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 19-ի և 20-ի համարներում։*

Պարտիական-պետական վերահսկողությունը գործողության մեջ, *հոդված, տպագրված «Լենինյան ուղիով» ամսագրի 1963 թվականի 9-րդ համարում։*

## 5. Լենինյան կոմերիտմիության ստեղծման 45-րդ տարեդարձը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ* — Երիտասարդության միությունների խնդիրները, *Երկեր, հատոր 31, էջ 343-366, Հայպետհրատ, 1952։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ* — Երիտասարդության մասին, *առանձին գիրք, Հայպետհրատ, 1955։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ* — Կոմունիզմի երիտասարդ կառուցողնե՛ր բարձր պարզեք Լենինի դրոշը, *ճառ, արտասանած կոմերիտմիության XIV համագումարում 1962 թվականի ապրիլի 19-ին, Հայպետհրատ, 1962։*

*Լ. Ֆ. ԻԼՅԻՉՈՎ* — Պարտիայի գաղափարական աշխատանքի հերթական խնդիրները, *զեկուցում ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1963 թ.) պլենումում, տպագրված «Ս. Հ»-ի 1963 թվականի հունիսի 19-ի և 20-ի համարներում։*

*ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ՍՏ. ՇԱՀՈՒՄՅԱՆԻ ԱՆՎԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ՏՈՒՆ*

# ԲԱՑՎԱԾ Է

«ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-ի 1964 թվականի բաժանորդագրությունը.

1 ամիսը— 15 կոպեկ
6 ամիսը— 90 կոպեկ
12 ամիսը— 1 ռուբ. 80 կոպեկ

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵՑԵՔ

«ԳԻՏՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱ» ամսագրին.

1 ամիսը— 40 կոպեկ
6 ամիսը— 2 ռուբ. 40 կոպեկ
12 ամիսը— 4 ռուբ. 80 կոպեկ

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»

---

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

Отдел идеологической работы ЦК КП Армении

**АГИТАТОРИ БЛОКНОТ**

**№ 20**

**1963**

*ՎՖ 10503* *Պատվեր 913* *Տիրաժ 7963*

*Հանձնված է արտադրության 5/X 1963 թ.*
*Ստորագրված է տպագրության 12/X 1963 թ.*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

**Գինը 8 կոպ.** Ինդեքս՝ 77704